Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 23 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։






# ԱՎԵԼԻ ՇԱՏ ԱՆԱՍՆԱԲՈՒԾԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐ ԵՐԿՐԻՆ

Հարազատ Կոմունիստական պարտիայի կողմից առաջադրված խնդիրը՝ բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ մոտակա տարիներին Ամերիկայի Միացյալ Նահանգներին հասնելու մասին, պատվով են կատարում մեր երկրի անասնաբուծության բնագավառի աշխատողները։ ՌՍՖՍՌ-ի, Ուկրաինայի, Մոլդավիայի, մեր և մյուս եղբայրական ռեսպուբլիկաների կոլտնտեսություններն ու սովխոզները անասնաբուծության զարգացման գործում ձեռք են բերել խոշոր հաջողություններ։ Նրանք մեծ չափերով ավելացրել են անասունների գլխաքանակը և բարձրացրել նրանց մթերատվությունը։ Երկրի բազմաթիվ առաջավոր կոլտնտեսություններ, անցյալ տարվա համեմատությամբ, այս տարի հողի 100 հեկտար տարածության դիմաց արտադրվող մսի քանակը ավելացրել են երկու և նույնիսկ երկուս ու կես անգամ։ Մեր ռեսպուբլիկայում





1956 թվականին հողատարածության 100 հեկտարի դիմաց ստացվել է 42 ցենտներ միս, 172,8 ցենտներ կաթ, 190 կգ. բուրդ։ Այս տարվա 8 ամսում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, 15 տոկոսով ավելի շատ կաթ և 12 տոկոսով ավելի շատ բուրդ է մթերված և գնված։ Այս տարվա 10 ամսում, անցած տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, յուրաքանչյուր կովի կաթնատվությունը և կաթի համախառն արտադրանքը ավելացել է 16 տոկոսով։

Սովետական Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները պարտավորություն են ստանձնել 100 հեկտար հողատարածության դիմաց 1960 թվականին արտադրել 82 ցենտներ միս, կոլտնտեսություններում՝ 57 ցենտներ, 350 ցենտներ կաթ, կոլտնտեսություններում՝ 210 ցենտներ։ Ռեսպուբլիկայում քիչ չեն նաև այն կոլտնտեսությունների ու սովխոզների թիվը, որոնք ստանձնել են ավելի բարձր պարտավորություններ։

Անասնաբուծական մթերքների, հատկապես մսի ու կաթի արտադրությունն ավելացնելու գործում լուրջ հաջողությունների են հասել Շահումյանի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Կալինինոյի, Ղուկասյանի, Ամասիայի



կոլտնտեսություններն ու սովխոզները։ Կալինինոյի շրջանի կոլտնտեսությունները 10 ամսում ամեն մի կովից ստացել են 2.095 կիլոգրամ կաթ։ Կաթի այդ քանակը անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ 522 կիլոգրամով ավելի է։ 1956 թվականի համեմատությամբ, 1957 թվականին Ղուկասյանի շրջանի կոլտնտեսությունները կաթի արտադրությունն ավելացրել են 37 տոկոսով։ Հոկտեմբերյանի շրջանում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը, 1938 թվականի համեմատությամբ, 1956 թվականին աճել է մոտ երեք անգամ, որից կովերի գլխաքանակը՝ մոտ 4 անգամ։ Ոչխարների գլխաքանակն աճել է ավելի քան 5 անգամ։ Մինչև այս տարվա սեպտեմբերի 1-ը յուրաքանչյուր կովից ստացվել է 1.487 կգ. կաթ։ Նույն շրջանի Նորապատի կոլտնտեսությունը այս տարվա 10 ամսում յուրաքանչյուր կովից ստացել է 4.000 լիտր կաթ։ Մարտունու շրջանի կոլտնտեսությունները անցյալ տարվա 9 ամիսների ընթացքում արտադրեցին 27.658 ցենտներ կաթ, իսկ այս տարի, նույն ժամանակամիջոցում կաթի արտադրությունն հասավ 31.371 ցենտների։ Շրջանում մեկ կովի կաթնատվությունն, անցյալ տարվա համեմատությամբ ավելացել է 191 կիլոգրամով։

Անասնաբուծության զարգացման բնագավառում աչքի ընկնող հաջողությունների են հասել մեր ռեսպուբլիկայի մեքենա-տրակտորային կայանները։ Ռեսպուբլիկայի անասնապահական ֆերմաներում բազմաթիվ աշխատատար պրոցեսներ մեքենայացված են։

Մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ Ամերիկայի Միացյալ Նահանգներին հասնելու գործում խոշոր անելիքներ ունեն նաև մեր ագիտատորները։ Ամենից առաջ ագիտատորները անասնապահ կոլտնտեսականներին պետք է սիստեմատիկաբար և մանրամասնորեն պարզաբանեն անասնաբուծության առաջավորների փորձը, ընդհանրացնեն դա և այն արմատավորեն կոլտնտեսություններում կամ սովխոզներում։ Հենց մեր ռեսպուբլիկայում քիչ չեն այն անասնաբուծական, հատկապես կովաբուծական ֆերմաների և անասնապահների թիվը, որոնք արդեն մի քանի տարի անընդհատ գործնականում ցույց են տալիս անասունների մթերատվությունը, մանավանդ կաթնատվությունը բարձրացնելու լայն հնարավորությունները։ Աշխատանքի այդ առաջավորների համար յուրաքանչյուր կովից 3.000-ից մինչև 4.000 կիլոգրամ և ավելի



կաթ ստանալը սովորական երևույթ է դարձել։ Հարկավոր է բոլոր անասնապահներին հանգամանորեն պարզաբանել, թե անասնաբուծության առաջավորներն ինչպե՞ս և ի՞նչ միջոցներով են հասել նման բարձր ցուցանիշների։ Լավ կլինի, որ մեր ագիտատորները, պարտկազմակերպությունների օգնությամբ, հաճախակի անասնաբուծության առաջավորների հանդիպումներ կազմակերպեն ունկնդիրների հետ։ Թող անասնաբուծության առաջավորները ունկնդիրներին պատմեն իրենց աշխատանքի դրական փորձի մասին, գործնականում ցույց տան այն ուղիները, որոնք նպաստում են անասունների մթերատվության բարձրացմանը։

Անասունների մթերատվությունը բարձրացնելու գործում առաջավոր անասնապահների կատարած ուսանելի աշխատանքը ավելի բազմակողմանի պարզաբանելու նպատակով մեր ագիտատորները պետք է լայնորեն օգտագործեն նաև ցուցադրական ագիտացիան։ Ցուցադրական նյութերի՝ ալբոմների, դիագրամների, պլակատների, ֆոտոնկարների միջոցով ունկնդիրներին կարելի է ծանոթացնել անասնաբուծության բնագավառում, ինչպես մեր երկրի, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի ձեռք բերած հաջողություն-

ներին, պարզաբանել պարտիայի և կառավարության կողմից առաջադրված խնդիրները և այդ կապակցությամբ այն աշխատանքները, որ առաջիկա տարում կատարելու են իրենք, կոլտնտեսականները։

Անասնապահների լայն շրջանում առաջավոր փորձը պարզաբանելու, այն արտադրության մեջ արմատավորելու, ցուցադրական ագիտացիա կազմակերպելու հետ միասին հարկավոր է նաև ժամանակին բացահայտել թերությունները։ Ագիտատորը սխալ արած կլինի, եթե միշտ ունկնդիրներին պատմի ձեռք բերած հաջողությունների մասին, առանց բացահայտելու այն թերությունները, որ խանգարում են լիովին կատարելու տվյալ կոլտնտեսության, սովխոզի, ՄՏ կայանի կամ անասնապահական ֆերմայի առջև դրված խնդիրները։ Զրույցի ընթացքում անհրաժեշտ է լավ աշխատողներին խրախուսելու հետ միաժամանակ պարսավանքի ենթարկել նրանց, որոնք թերանում են աշխատանքում, ավելի շատ հոգ են տանում անձնական օգուտի մասին, քան հանրային շահի մասին։

...«Ագիտատորների որոշ մասը,— ասում է ընկ. Ն. Խրուշչովը,— յուրացրել է միայն նվաճումների ու հաջողությունների մասին



խոսելու սովորությունը և խուսափում է գրույցներից այն ժամանակ, երբ խոսք է բացվում թերությունների և դժվարությունների մասին։ Դա, իհարկե, իջեցնում է ագիտացիայի ներգործությունը և չի նպաստում աշխատանքի թերությունների վերացմանը»։

Զրույցների ընթացքում ունկնդիրներին պետք է տալ այն միտքը, որ քիչ ջանքեր պահանջող աշխատանք չէ մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ Ամերիկայի Միացյալ Նահանգներին հասնելու գործը, որ առաջընթացի ճանապարհին պետք է դեռևս հաղթահարել լուրջ դժվարություններ և ապահովել անասունների բարձր մթերատվությունը։

Անհրաժեշտ է հմտորեն օգտագործել ագիտացիոն աշխատանքի բոլոր ձևերն ու միջոցները, օգնել կոլտնտեսային պարտիական կազմակերպություններին, կոլտնտվարչություններին հաջողությամբ անցկացնելու անասունների ձմեռումը, պատվով կատարելու պարտիայի կողմից առաջադրված խնդիրը՝ մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու և անցնելու մասին։

---

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Հայկական ՍՍՌ Արդարադատության մինիստր

*Այս տարվա դեկտեմբերի 15-ին տեղի կունենան մեր ռեսպուբլիկայի ժողովրդական դատարանների ընտրությունները։ Այդ ընտրությունները անցկացվելու են ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումների կատարման և մեր ռեսպուբլիկայի աշխատավորության տնտեսական և քաղաքական ակտիվության բարձր վերելքի պայմաններում։*

*Ժողովրդական դատարանների ընտրությունները խթան կհանդիսանան մեր երկրում սոցիալիստական օրինականության հետագա ամրապնդման և արդարադատության անշեղ իրականացման գործում։*

*Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը միշտ էլ խոշոր նշա-*



*նակություն են տվել սոցիալիստական օրինականության պահպանմանը։ Սովետական դատարանը իր ամբողջ գործունեությամբ ՍՍՌՄ քաղաքացիներին դաստիարակում է Հայրենիքի և սոցիալիզմի գործին նվիրվածության, սովետական օրենքները ճիշտ և անշեղորեն կատարելու, սոցիալիստական սեփականության նկատմամբ խնամքով վերաբերմունքի և սոցիալիստական համակեցության կանոնները հարգելու ոգով։ Սովետական դատարանը պետական իշխանության մի կարևոր օրգան է, որը կանգնած է աշխատավորների ձեռք բերած մեծ հաղթանակների պաշտպանության դիրքերում։*

*Ժողովրդական դատարանը սովետական դատական սիստեմի հիմնական օղակն է։ Քրեական և քաղաքացիական գործերի ճնշող մեծամասնությունը (մոտ 90 տոկոսը) քննության է ենթարկվում ժողովրդական դատարանների կողմից։ Ժողովրդական դատարանը իր գործունեությամբ կապված է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատանքի և մեր ժողովրդի կյանքի ու գործունեության հետ ու սովետական օրենքների ճիշտ կիրառումով օժանդակում է նրանց նորմալ զարգացմանը։*

*Մեր երկրում բոլոր դատարանները ներ-*

քեվից մինչև վերև ընտրովի են։ Ինչպես ՍՍՌՄ Գերագույն դատարանը, այնպես էլ միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն դատարանները, երկրամասային և մարզային դատարանները համապատասխանորեն ընտրվում են Գերագույն Սովետների, երկրամասային և մարզային Սովետների կողմից, հինգ տարի ժամանակով։ ՍՍՌՄ Գերագույն դատարանը և հատուկ դատարանները, որոնք ընտրվում են ՍՍՌՄ Գերագույն Սովետի կողմից հինգ տարի ժամանակով գործում են ՍՍՌՄ-ի ամբողջ տերիտորիայում, անկախ նրա վարչական բաժանումից։ Մեզ մոտ Հայկական ՍՍՌ-ում վարչական կառուցվածքի համաձայն գոյություն ունեն Հայկական ՍՍՌ Գերագույն դատարան և ժողովրդական դատարաններ։

Ժողովրդական դատավոր և ժողովրդական ատենակալ կարող է ընտրվել յուրաքանչյուր քաղաքացի, որը օգտվում է ընտրական իրավունքից և մինչև ընտրությունների օրը հասել է 23 տարեկան հասակի։ Ժողովրդական դատավոր և ժողովրդական ատենակալ ընտրվելու համար հատուկ տարիքի սահմանումը խոշոր նշանակություն ունի։

Սովետական ժողովուրդը արդարադատության իրականացման գործը կարող է հանձ-



նարարել միայն իր այնպիսի ներկայացուցիչներին, որոնք կյանքի որոշ փորձ ունեն։ Առանց կյանքի փորձ ունենալու ժողովրդական դատավորները և ժողովրդական ատենակալները չեն կարող բազմակողմանիորեն քննության ենթարկել դատական գործերը և արդարացի վճիռներ կայացնել։ Դատված անձինք նույնպես չեն կարող ընտրվել ժողովրդական դատավոր և ժողովրդական ատենակալ։ Այդ ևս շատ կարևոր նշանակություն ունի, քանի որ դատավորները առաջին հերթին իրենք ոչ մի բանով արատավորված չպետք է լինեն, որպեսզի ոչ միայն փաստական, այլև բարոյական իրավունք ունենան ուրիշին դատելու և սովորեցնելու։

Ժողովրդական դատավորները իրենց աշխատանքի համար հաշվետու են ընտրողների առաջ։ Ընտրողները լսելով դատավորների հաշվետու զեկուցումները, առաջարկություններ են անում դատարանի աշխատանքի թերությունները վերացնելու և այնտեղ աշխատանքը բարելավելու ուղղությամբ։

Ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների թեկնածուներ առաջադրելու իրավունք է վերապահվում հասարակական կազմակերպություններին, կոմունիստական պարտիական կազմակերպու-

*թյուններին, պրոֆեսիոնալ միությունների, կոոպերատիվ կազմակերպություններին, երիտասարդական կազմակերպություններին, ինչպես նաև բանվորների և ծառայողների ընդհանուր ժողովներին, զինվորական ծառայողներին, գյուղացիների ընդհանուր ժողովներին, սովխոզների բանվորներին և ծառայողներին։*

*Սովետական պետության ստեղծող Լենինը միշտ խոշոր նշանակություն է տվել աշխատավորության մասնակցությանը երկրի կառավարման գործին և դատարանի աշխատանքին։ Մեզ մոտ սոցիալիստական պետությունում արդարադատությունն իրականացվում է բացառապես աշխատավորների ներկայացուցիչների՝ ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների միջոցով։ Ժողովրդական դատարանների առաջիկա ընտրությունների ժամանակ բացի ժողովրդական դատավորներից Հայկական ՍՍՌ-ում պետք է ընտրվեն չորս հազար երկու հարյուրից ավելի ժողովրդական ատենակալներ։ Մասնակցելով դատարանի աշխատանքներին, նրանք դրանով իսկ մասնակցում են պետական կառավարման կարևոր գործին, բարձրացնում են ժողովրդական դատարանի հեղինակությունը, ամրապըն-*



*դում են նրա կապը լայն մասսաների հետ և ապահովում սովետական արդարադատության իսկական դեմոկրատիզմը։*

*Մեր երկրում արդարադատությունը իրականացվում է ժողովրդական դատավորի և երկու ժողովրդական ատենակալի կազմով։ Ժողովրդական ատենակալները դատական գործերի քննության ժամանակ լրիվ օգտվում են ժողովրդական դատավորի իրավունքներից, ըստ որում նրանցից յուրաքանչյուրն ունի մեկ ձայն և դատարանն այս կամ այն որոշումն ընդունում է դատավորների սլարզ մեծամասնությամբ։*

*Ժողովրդական ատենակալները տարեկան ոչ ավելի քան 10 օր հերթականությամբ հրավիրվում են դատարան կատարելու իրենց պարտականությունները, որի ընթացքում հիմնական աշխատանքի վայրում պահպանվում է նրանց աշխատանքի վարձատրությունը։ Դատարանակազմության օրենքի համաձայն ժողովրդական ատենակալները կարող են փոխարինել ժողովրդական դատավորներին, վերջիններիս հիվանդության կամ արձակուրդում գտնվելու ժամանակ։ Այսպիսով մեր աշխատավորությունը լայն կերպով մասնակցում է սովետական դատարանի գործունեությանը։*

Բուրժուազիան վախենում է ժողովրդին թույլ տալ մասնակցելու դատական գործունեությանը։ Օրինակ, ԱՄՆ-ում բացառությամբ մի քանի նահանգների դատավորներին նշանակում է պրեզիդենտը։ Անգլիայում դատավորներին նշանակում է թագավորը։ Մեծ մասամբ դատավորներ են նշանակվում խոշոր հողատերերը և կապիտալիստները։

Կապիտալիստական երկրներում օրենսդրությունը սահմանում է հատուկ կարգ, որը աշխատավորության ներկայացուցիչներին արգելում է նույնիսկ երդվյալ ատենակալ լինել։ Անգլիայում երդվյալ ատենակալներ կարող են լինել միայն այն անձինք, որոնք ունեն սահմանված չափի հողամաս կամ տարեկան որոշակի եկամուտ բերող տուն։ Պարզ է, որ նման պայմաններում նույնիսկ որակավորված բանվորը բացառություն կարող է լինել երդվյալ ատենակալների կազմում, եթե հաշվի առնենք նաև այն, որ ընտրությունների ժամանակ գործադրվում են խաբեբայություն, ընտրողներին կաշառելու, նրանց ահաբեկման և այլ միջոցներ։

ՍՍՌՄ-ում արդարադատությունը իրականացվում է քաղաքացիների համար միասնական և հավասար դատարանի սկզբունքով, անկախ քաղաքացիների սոցիալական



ծագումից, գույքային և ծառայության դիրքից, նրանց ազգային և ռասայական պատկանելիությունից։ Սովետական դատարանի առաջ բոլոր քաղաքացիները պատասխանատու են հավասարապես։

Մարքսն ու Էնգելսը գիտականորեն ցույց են տվել, որ որտեղ տիրապետում է բուրժուազիան, այնտեղ իրավունքը, օրենքը, ժողովրդի համար թշնամի ուժ են հանդիսանում։ Բուրժուական պետություններում ձևականորեն հռչակում են բոլորի հավասարությունը օրենքի առաջ, սակայն դատարանի գործունեությունը շատ հեռու է միատեսակ լինելուց դեպի ունևոր դասակարգի և չունևորների ներկայացուցիչները և առանձին ազգությունները։ Ամերիկյան դատարանը խրախուսում է ազգային և ռասայական խտրականություն նեգրերի, հնդիկների և այլ ազգությունների նկատմամբ։ Դա արտահայտվում է նրանով, որ ֆեդերալ դատավորների պաշտոններում և երդվյալ ատենակալների կազմում նեգրեր չեն նշանակվում։ Նեգրերին չեն դատում այն օրենքներով, ինչ օրենքներով դատում են սպիտակամորթներին։

Որոշ կապիտալիստական երկրներում դատարանները համարյա առևտրական կազմակերպություններ են հանդիսանում։ Ներ-

կայումս էլ ԱՄՆ-ի մի քանի նահանգներում դատավորները հիմնական վարձատրություն չեն ստանում։ Նրանց վարձատրությունը կախված է նրանց քննած գործերի քանակից, ընդ որում մեղադրյալին արդարացնող դատավճիռ արձակելու դեպքում դատավորը ավելի քիչ վարձատրություն է ստանում, քան մեղադրական դատավճիռ արձակելիս։ Այսպես ԱՄՆ-ի Վիրգինիա նահանգում մեղադրական դատավճիռ կայացնելու դեպքում դատավորի և դատախազի վարձատրությունը երկու անգամ ավելի է հաշվում, քան արդարացնող դատավճիռ կայացնելիս։ Զարմանալի չէ, որ այդպիսի պայմաններում դատավորն ու դատախազը արդարացման յուրաքանչյուր դեպք դիտում են որպես ուղղակի ոտնձգություն իրենց գրպանի դեմ։ Այս է կապիտալիստական երկրների այսպես կոչված արդարադատության օրգանների իսկական դեմքը։

Հայկական ՍՍՌ ժողովրդական դատարանների ընտրությունների կանոնադրության համաձայն ժողովրդական դատարանները ընտրվում են շրջանի քաղաքացիների կողմից 3 տարի ժամանակով։ Ժողովրդական դատարանների ընտրություններին մասնակցում են այն բոլոր քաղաքացիները, որոնք ունեն



ընտրական իրավունք, ընտրողների ցուցակները կազմելու պահին բնակվում են տվյալ տերիտորիայում և ընտրությունների օրը լրացել է նրանց 18 տարին։ Ի տարբերություն տեղական Սովետների ընտրությունների, ժողովրդական դատարանների ընտրությունների ժամանակ քվեարկության իրավունքի վկայական չի լինելու, որովհետև տվյալ շրջանի բնակիչը կարող է ընտրել միայն իր շրջանի ժողովրդական դատարանին։

Ի տարբերություն տեղական Սովետների ընտրությունների, ժողովրդական դատարանների ընտրությունների ժամանակ ընտրական հանձնաժողովներ չեն կազմակերպվում։ Ժողովրդական դատարանների ընտրությունների կազմակերպումը և անցկացումը դրված է տեղական Սովետների վրա, որով մեծ չափով բարձրացվում է նրանց պատասխանատվությունը ընտրությունները հաջող նախապատրաստելու և անցկացնելու գործում։

Ժողովրդական դատարանների ընտրությունների կապակցությամբ կատարվող կազմակերպչական աշխատանքի ծանրությունը ընկնում է ընտրական կետերի վրա։ Այդ իսկ տեսակետից շատ մեծ է շրջանային և քաղաքային Սովետների կողմից առանձնացված լիազորների պատասխանատվու-

թյունը ընտրությունների հաջող նախապատրաստման և անցկացման գործում։

Բացի ընտրական կետերը կազմելուց ընտրական օկրուգներում և կետերում ձայները հաշվող հանձնաժողովներ առանձնացնելուց և ընտրողների ցուցակները կազմելուց աշխատավորների դեպուտատների շրջանային և քաղաքային (ռայոնական բաժանում չունեցող քաղաքների) Սովետների գործադիր կոմիտեների վրա պարտականություն է դրված նաև առաջադրված ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների թեկնածուների գրանցումը, ընտրական կետերին սահմանված ձևի ընտրական բյուլետենների մատակարարումը, ընտրողների ցուցակների մեջ անճշտություններ լինելու մասին արված բողոքների քննարկումը, ընտրական կետերի լիազորների ոչ ճիշտ գործողությունների մասին տրված բողոքների քննարկումը, ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների ընտրությունների արդյունքների սահմանումը ըստ ընտրական օկրուգների, ընտրված ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների ընտրվելու մասին վկայականներ տալը և այլն։

Ժողովրդական դատարանների ընտրու-



թյունների համար յուրաքանչյուր ընտրող ստանում է երկու ընտրական բյուլետեն՝ մեկը ժողովրդական դատավորին, իսկ մյուսը ժողովրդական ատենակալներին ձայն տալու համար։

Ժողովրդական դատարանների ընտրությունների նախապատրաստման ընթացքում խոշոր նշանակություն ունի քաղաքական-մասսայական աշխատանքը ընտրողների մեջ։ Այս կապակցությամբ տեղական պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ խոշոր անելիքներ ունեն մեր ագիտատորները։ Նրանք պետք է հանգամանորեն պարզաբանեն ինչպես ընտրությունների կանոնադրությունը, այնպես էլ ՍՍՌՄ Կոնստիտուցիայի այն գլուխը, որը վերաբերվում է ՍՍՌՄ քաղաքացիների իրավունքներին ու պարտականություններին։ Հարկավոր է ագիտացիոն զրույցներում հատուկ ուշադրություն դարձնել պարտիայի XX համագումարի որոշումները մինչև վերջ կենսագործելու վրա։

Ժողովրդական դատարանների առաջիկա ընտրությունների ժամանակ կրկին անգամ կցուցադրվի կոմունիստների և անպարտիականների բլոկի հզոր ուժը, որը հանդիսանում է սովետական ժողովրդի, Կոմունիստական պարտիայի կողմից կոփված բարոյական, քաղաքական վառ արտահայտությունը։

---

# ՀԵԿՏԱՐԻՑ 400 ՑԵՆՏՆԵՐ ՇԱՔԱՐԻ ՃԱԿՆԴԵՂ

Սպիտակի շրջանի Մեծ Պարնի գյուղի Շահումյանի անվան կոլտնտեսության դաշտավարական № 6 բրիգադայի բրիգադիր Գերասիմ Բայաղյանի պատմածը

*Տարիների փորձը ցույց է տվել, որ միշտ էլ կարելի է բարձր բերք ստանալ, եթե լավ մշակվի հողը, լրիվ ու ժամանակին կատարվեն ագրոտեխնիկական միջոցառումները։ Մեր բրիգադան տարիներ շարունակ այդպես է աշխատում և դրա շնորհիվ էլ անընդհատ ավելացնում է ճակնդեղի համախառն բերքը։ Ընթացիկ տարում նույնպես բարձր բերք ենք հավաքել։ Մշակած 29 հեկտար ճակնդեղի դաշտերի յուրաքանչյուր հեկտարից ստացել ենք 350—400 ցենտներ միջին բերք՝ պլանով նախատեսված 208-ի փոխարեն։ Բրիգադայում ունենք օղակներ, որոնք դրանից էլ բարձր բերք են ստացել։ Հեկտարից 400—450 ցենտներ ճակնդեղի հումք ստա-*



*ցան, օրինակ, Պ. Աշուղաթոյանի և Լ. Շահբազյանի ղեկավարած օղակները, որոնք դեռ տարեսկզբից բարձր բերքի համար իրար հետ մրցում էին։*

*Բայց միայն մեր բրիգադան չէ, որ տարիներ շարունակ ճակնդեղի բարձր բերք է ստանում։ Մեր կոլտնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից 350 ցենտներ շաքարի ճակնդեղի հումք է հանձնում շաքարի գործարանին, իսկ օղակավարներ Լ. Գասոյանը, Ռ. Մարգարյանը, Ա. Չիլինգարյանը և ուրիշ շատ օղակներ հեկտարից հավաքում են 450—500 ցենտներ ճակնդեղ։ Կոլտնտեսությունը դեռ հոկտեմբերի 20-ին սահմանված ժամկետից 15 օր շուտ կատարեց ճակնդեղի հանձնման պետական առաջադրանքը։*

*Ինչպե՞ս ենք մենք աճեցնում բարձր բերք։*

*Տարիների փորձից լավ գիտենք, որ բարձր բերքն ինքն իրեն չի գալիս, այն նվաճվում է ազնիվ ու ջանասեր աշխատանքով։ Մեր ճակընդեղագործները, որոնց թիվը բրիգադայում հասնում է 45-ի, հմտորեն համագործակցելով մեխանիզատորների հետ, ճիշտ այդպես էլ աշխատում են։*

*Մենք, իբրև բարձր բերքի կարևոր նախադրյալ, հատուկ ուշադրություն ենք դարձնում հողի նախապատրաստության վրա։*

Նախքան ցրտահերկ կատարելը, բոլոր հողամասերը պարարտացնում ենք և ապա խնամքով հարթեցնում։ Յուրաքանչյուր հեկտարի վրա շաղ ենք տալիս 4 ցենտներ սուպերֆոսֆատ և նոր միայն խոր վար կատարում։ Ցրտահերկերը նույնպես վաղ գարնանը նախացանքային մշակության ենք ենթարկում։ Փոցխելու ընթացքում յուրաքանչյուր հեկտարին տալիս ենք 20 տոննա տեղական պարարտանյութ՝ մեծ մասամբ ոչխարի փթած աղբ, այնուհետև մեկ ու կես ցենտներ ամիակային սելիտրա և 3 ցենտներ սուպերֆոսֆատ, անհրաժեշտության դեպքում կատարում ենք նաև քար հավաք։

Մենք կիրառում ենք մեկ ուրիշ ագրոմիջոցառում ևս։ Երբ ճակնդեղի ցանքը կատարվում է հացահատիկային կուլտուրաների բերքահավաքից հետո ազատված հողերում, այդ տարածությունների վրա տրակտորով խոզանի երեսվար ենք կատարում և, ապա, հարթեցնում։ Երեսվարից մոտ 15 օր հետո, այդ հողերի վրա միաժամանակ խոր վար ենք կատարում։ Պարարտանյութերը մեզ մոտ սովորաբար օգտագործվում է իրար հետ խառնված վիճակում։

Լավ ենք նախապատրաստվում ցանքին։ Նախքան ցանքը, գործարանից ստանում ու



մաքուր պտում ենք սերմը։ Մի քանի տարի է ինչ մենք ցանք ենք կատարում բացառապես ախտահանված սերմերով։ Կատարում ենք նաև սերմերի խոնավացում, որով նախ՝ արագացվում է սերմի ծլման պրոցեսը և ապա՝ այդ սերմերից ուժեղ ծիլեր են ստացվում, բույսերը ավելի քիչ են վարակվում հիվանդություններով։

Մեր պայմաններում ճակնդեղի ցանքը սովորաբար կատարվում է ապրիլ ամսի կեսերին, երբ հողն ապահովված է լինում բավականաչափ ջերմությամբ։ Մեր յուրաքանչյուր ճակնդեղագործ իր փորձից լավ գիտի, որ մինչև հողում առնվազը 10 աստիճան ջերմություն չլինի, չպետք է ցանել։ Այդպես էլ մենք վարվում ենք։ Խստիվ պահպանում ենք ցանքի համար սահմանված ժամկետը։

Աշխատանքն այնպես ենք դասավորում, որ ցանքը կատարվի ամենասեղմ ժամկետում։ Մեր բրիգադան, օրինակ, այս տարի 29 հեկտար տարածության վրա ճակնդեղի ցանքն ավարտեց 6 օրում՝ նախորդ տարվանից 3 օրով շուտ։ Ցանքը ամբողջովին կատարեցինք կոմբինացված շարքացաններով։ Մենք շատ գոհ ենք Սպիտակի ՄՏ կայանի մեխանիզատորներ Օ. Գասոյանի և Վ. Կարապետյանի կատարած աշխատանքից։ Նր-

րանք աշխատեցին պատասխանատվության մեծ զգացումով, անխափան ու բարձր արտադրողականությամբ օգտագործեցին ցանող ագրեգատը, ցանքը կատարեցին հավասար խորությամբ, պահպանելով շարքերի ուղղությունը։ Դրա շնորհիվ էլ բույսերը ծլեցին միաժամանակ, մշակությունների ընթացքում մեքենաները աշխատեցին լավ, շարքերի ուղիղ լինելու հետևանքով բույսերը չկտրտվեցին։

Առավել կազմակերպված ձեռնամուխ եղանք ցանքերի վեգետատիվ մշակությանը։ Առաջին աշխատանքը, որը կատարեցինք ընդամենը 5—6 օրում, հողի մակերեսային փխրեցումն էր։ Իսկ ինչպես հայտնի է մակերեսային փխրեցման միջոցով նախ՝ հողը մշտապես փուխր վիճակում է գտնվում, ապա ոչնչանում են մոլախոտերը և, որ չափազանց կարևոր է՝ օդը առատորեն մուտք է գործում հողի մեջ։

Ոչ պակաս կարևոր նշանակություն ենք տալիս բույսերի նոսրացմանը։ Ընթացիկ տարում նույնպես այդ կարևոր աշխատանքը մեզ մոտ սկսվեց մայիսի 10-ից և ավարտվեց ընդամենը մեկ հնգօրյակում։ Նոսրացման ընթացքում մենք բույսերի որոշ մասը հեռացրինք, միաժամանակ լրացրեցինք շար-



քերը, բաց մնացած տարածություններում վերացանք կատարեցինք։ Այսպիսով ամբողջ ցանքը դարձրինք լիարժեք։ Էլ չեմ խոսում այն մասին, որ, մյուս առավելությունների հետ միասին, նոսրացման միջոցով նպաստավոր պայմաններ ստեղծվեցին ինչպես մեքենայական աշխատանքի, այնպես էլ ոռոգումների համար։

Նոսրացման աշխատանքներին հաջորդեցին քաղհան-փխրեցումները։ Մենք, տարիների փորձից լավ գիտենք, որ որքան դաշտերը փուխր են լինում ու մոլախոտերից զերծ, այնքան լավ են աճում բույսերը։ Ընթացիկ տարում մեր բրիգադայում հիմնականում 3—4, իսկ առանձին տարածություններում, որտեղ անհրաժեշտություն զգացվեց, նույնիսկ 6—7 փխրեցում ենք կատարել։ Մեր ճակնդեղագործները առանձնակի տեղ են տալիս այդ աշխատանքի որակին։ Օրինակ, բոլորովին էլ օգուտ տալ չի կարող, երբ փխրեցումը կատարվում է ծանծաղ, այդ դեպքում ոչ հողն է փուխր դառնում, ոչ էլ լրիվ ոչնչանում են մոլախոտերը։ Դրա համար էլ փխրեցումը կատարում ենք ոչ պակաս 13 սմ. խորությամբ։

Հայտնի է, որ բույսը իր վեգետացիայի ընթացքում, մեծ մասամբ ամառը, սննդա-

նյութերի մեծ պահանջ է զգում, բույսի այդ պահանջը մենք լրացնում ենք սնուցումների միջոցով։ Ընթացիկ տարում բույսերի աճման ընթացքում, մենք 3—4 սնուցում ենք կատարել։ Սնուցումը մեծ մասամբ կատարում ենք բուսասնիչների միջոցով։ Հիմնական սնուցումներից բացի մեկ փխրեցում էլ անում ենք սելիտրայով, յուրաքանչյուր հեկտարին մեկ ցենտների հաշվով։ Դա հարկավոր է նրա համար, որպեսզի հողում պահպանվի անհրաժեշտ քանակությամբ խոնավություն, մանավանդ օգոստոս ամսին, երբ շոգերի հետևանքով հողից ավելի շատ խոնավություն է արտամղվում։

Ճակնդեղը շատ ջուր պահանջող կուլտուրա է։ Դրա համար հարկավոր է բոլոր միջոցները կիրառել, որպեսզի ջուրը տրվի սահմանված ժամանակին, ինչպես նաև խստորեն պահպանվի ջրային ռեժիմը։ Մենք այդպես էլ վարվում ենք։ Բացառությամբ առաջին և երկրորդ ոռոգումներից, որոնք սովորաբար կատարում ենք հունիսի վերջին և հուլիսի սկզբին, մյուս ոռոգումները կատարում ենք ավելի հաճախ, համարյա 7—8 օրը մեկ անգամ։ Շատ մեծ նշանակություն ենք տալիս ոռոգումների տեխնիկային։ Ակոսներում մեծ մասամբ ջուրը բաց ենք թողնում



դանդաղ հոսանքով, որպեսզի բոլոր բույսերը հավասարապես խոնավանան, բայց չողողվեն։

Իհարկե, մեր կատարած աշխատանքները իզուր կանցնեին, եթե մենք ժամանակին չհավաքեինք ճակնդեղի բերքը, եթե այդ ուղղությամբ ինչպես պետք է, չմոբիլիզացնեինք ուժերը։ Մենք լավ գիտենք, թե մեզ մոտ երբ են հասունանում արմատները և ըստ այնմ էլ նախապատրաստվում ենք։ Երբ սկսում են դեղնել ներքևի տերևները, այդ նշանակում է, որ արդեն հասունացել է բերքը։ Եվ ճակնդեղագործները գործի են անցնում։

Ընթացիկ տարում անհամեմատ լավ նախապատրաստված սկսեցինք բերքահավաքը։ Մինչ այդ կազմեցինք գրաֆիկ-պլան, այն քննության առանք բրիգադայի արտադրական ընդլայնված խորհրդակցությունում և որոշեցինք նոյեմբերի առաջին օրերին լրիվ ավարտել բերքահավաքը։ Մեզ օգնության հասան Սպիտակի ՄՏ կայանի մեխանիզատորները։ Մեր բրիգադայում է աշխատում փորձված մեխանիզատոր Պ. Գասոյանը։ Նա բերքահավաքի առաջին օրից ճակնդեղահան կոմբայնը աշխատեցնում է անխափան ու բարձր արտադրողականությամբ, իր օրվա

առաջադրանքը կատարելով 130—150 տոկոսով։

Ճակնդեղի հանման, արմատների մաքրման, դրանք շաքարի գործարան ուղարկելու ուղղությամբ լրիվ մոբիլիզացվել են բրիգադայի ուժերը։ Բերքահավաքի առաջին օրերից ոչ մի մարդ չէր բացակայում աշխատանքից։ Շատ կոլտնտեսականներ, այդ թվում Լ. Մարգարյանը, Ա. Շահբազյանը և մյուսները նախատեսված 250-ի փոխարեն օրական քանդում էին 300 քառ. մետր տարածություն, միաժամանակ նույն օրը մաքրում հանած արմատները։ Օրական 65—70 մարդ էր մասնակցում բերքահավաքի աշխատանքներին։ Զորս ավտոմեքենա անընդհատ շաքարի գործարան էին տեղափոխում հանված ու մաքրված հումքը, չորս սայլ էլ կոլտնտեսություն էր փոխադրում ճակնդեղի տերևները՝ սիլոս պատրաստելու համար։ Կարճ ասած, գործը այնպես էինք կազմակերպել, որ օրվա ընթացքում հանված արմատները նույն օրը շաքարի գործարան փոխադրվի, կատարվի ու գերակատարվի սահմանված գրաֆիկ պլանը։

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ՍՍՌՄ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

*Սովետական ժողովուրդը անշեղորեն կենսագործելով Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության առաջադրած խնդիրները, վերջին տարիների ընթացքում աչքի ընկնող հաջողությունների է հասել մեր երկրի գյուղատնտեսության զարգացման բնագավառում։ Ահա մի շարք թվեր ու փաստեր, որոնք համառոտակիորեն բնութագրում են այդ հաջողությունները։*

✪ *Գյուղատնտեսությունը ժամանակակից տեխնիկայով անընդհատ հագեցնելու մասին մեր պարտիայի և կառավարության լուրջ հոգատարության շնորհիվ մեր երկրի գյուղատնտեսության մեջ զգալիորեն բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։ Այժմյան համեմատությամբ, նախառևոլյուցիոն Ռուսաստանի գյուղատնտեսության մեջ զբաղված բնակչության թիվը կրկնակի անգամ ավել էր, բայց և այնպես ցարական Ռուսաստանի գյուղատնտեսության արտադրանքը մի քանի անգամ պակաս էր, քան այժմ։*

✪ *Մեր երկրի ժամանակակից գյուղատնտեսությունը հզոր ու առաջավոր է նրանով, որ այն զարգանում է բնակչության կոլեկտիվ ջանքերի շնորհիվ և գիտության նվաճումների ու առաջավոր փորձի անշեղ կիրառման հիման վրա։ Ներկայումս մեր երկրում գոյություն ունի մոտ 80 հազար կոլտնտեսություն։ Բացի դրանից, գոյություն ունեն նաև սոցիալիստական խոշոր գյուղատնտեսական ձեռնարկություններ՝ սովխոզներ, որոնց թիվը հասնում է 5.800-ի։ Միայն սովխոզների տրամադրության տակ գտնվում է մոտավորապես 55 միլիոն հեկտար ցանքատարածություն, կամ մեր երկրի բոլոր վարելահողերի 25 տոկոսը։*

✪ *Սոցիալիստական արդյունաբերության զարգացման հիման վրա մեր երկրի գյուղատնտեսությունը տարեցտարի հագենում է գյուղատնտեսական նորագույն տեխնիկայով։ Այժմ մեր երկրի կոլտնտեսային ու սովխոզային դաշտերում աշխատում են մեկ միլիոն 632 հազար տրակտոր (15-ուժանոցի վերածած), 420 հազար հացահատիկային կոմբայն, մոտավորապես 600 հազար բեռնատար ավտոմեքենա և շատ ու շատ գյուղտնտեսական այլ մեքենաներ ու գործիքներ։*

✪ *Հողագործության մեջ այսպիսի քանակությամբ առաջնակարգ տեխնիկայի կիրառումը զգալիորեն բարձրացրել է աշխատանքի արտադրողականությունը գյուղատնտեսության մեջ։ 1913 թվականի համեմատությամբ հացահատիկի ապրանքային արտադրությունը ավելացել է գրեթե երեք անգամ, այդ թվում*



*ցորենինը՝ հինգ անգամ, բամբակի, արևածաղկի ու բանջարեղենի ապրանքային արտադրությունը՝ վեց անգամ, շաքարի ճակնդեղինն ու կարտոֆիլինը՝ գրեթե երեք անգամ։*

✪ *Խամ ու խոպան հողերի յուրացումով մեր երկրի ցանքատարածությունները ավելացան ավելի քան 35 միլիոն հեկտարով։ Այժմ ՍՍՌՄ-ի բոլոր ցանքատարածությունները կազմում են 193,2 միլիոն հեկտար, որը 1913 թվականի համեմատությամբ, ավել է 75 միլիոն հեկտարով։*

✪ *Պարտիայի և կառավարության ձեռնարկած միջոցառումների շնորհիվ վերջին երեք-չորս տարում զգալիորեն ավելացան ոչ միայն երկրի ցանքատարածությունները, այլև բոլոր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։ Մինչև 1957 թվականի նոյեմբերի 1-ը, 1953 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, պետության կողմից հացահատիկի մթերումներն ու գնումները կազմեցին 120 տոկոս, այդ թվում ցորենինը՝ 143 տոկոս, շաքարի ճակընդեղինը՝ 175 տոկոս, կարտոֆիլինը՝ 148 տոկոս, բանջարեղենինը՝ 179 տոկոս, անասունների մթերումներն ու գնումները՝ 148 տոկոս, այդ թվում խոզի մսինը՝ 304 տոկոս, կաթինն ու կաթնամթերքինը՝ 190 տոկոս, բրդինը՝ 142 տոկոս, ձվինը՝ 165 տոկոս։*

✪ *Չնայած այս տարվա անբարենպաստ կլիմայական պայմաններին, միայն խամ ու խոպան հողե-*

րի յուրացման շրջաններում առ 1-ը նոյեմբերի մթերվել է մեկ միլիարդ 21 միլիոն փութ հացահատիկ (չհաշված փոխարինիչները)։ Ամբողջ 1953 թվականին այդ շրջաններում մթերվել է 618 միլիոն փութ։ Սիբիրի շրջաններում համապատասխանաբար՝ 645 միլիոն փութ և 247 միլիոն փութ, այդ թվում միայն Ալթայի երկրամասում մոտավորապես 280 միլիոն փութ՝ ամբողջ 1953 թվականի 29 միլիոն փթի դիմաց։

✪ Մեծ վերելք է ապրում անասնաբուծության զարգացումը։ 1953 թվականի հոկտեմբերին խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը նախառևոլյուցիոն Ռուսաստանի մակարդակը գերազանցում էր միայն 4,6 միլիոն գլխով, 1953—1956 թվականների աճը կազմեց 7,4 միլիոն գլուխ և 1956 թվականի հոկտեմբերին նախառևոլյուցիոն մակարդակը գերազանցեց 12 միլիոն գլխով։ Գլխաքանակի աճին զուգընթաց բարձրացել է նաև անասունների մթերատվությունը. 1913 թվականի համեմատությամբ մսի ապրանքային արտադրանքը ավելացավ երկու անգամ, կաթինը՝ երեք, բրդինը՝ երեք անգամ, այդ թվում նուրբ և կիսանուրբ բրդինը՝ գրեթե հինգ անգամ։

✪ Էլ ավելի աչքի ընկնող հաջողությունների են հասել Սովետական Միության առանձին ռեսպուբլիկաների, մարզերի ու շրջանների կոլտնտեսությունները ու սովխոզները։ Մոլդավական ՍՍՌ Չադըր-Լունգի շրջանի կոլտնտեսությունները ամբողջ 1956 թվականի



ընթացքում հողի յուրաքանչյուր 100 հեկտարի հաշվով արտադրել էին 34 ցենտներ միս, այս տարվա միայն տասը ամսում՝ 66,6 ցենտներ։ Ամբողջությամբ վերցրած Մոլդավիայի կոլտնտեսությունները առ 1-ը նոյեմբերի 1957 թվականի պետությանը հանձնել ու վաճառել են գրեթե երկուս և կես անգամ շատ միս, քան անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում։ Վիննիցայի մարզի Կրիժոպոլսկի շրջանի կոլտնտեսությունները ամբողջ անցյալ տարվա ընթացքում գյուղատնտեսական հողատարածության 100 հեկտարի դիմաց արտադրել են 38 ցենտներ միս, իսկ ընթացիկ տարվա տասը ամսում՝ 101 ցենտներ կամ երկուս ու կես անգամ ավելի։

✪ Անշեղորեն կենսագործելով պարտիայի և կառավարության որոշումները գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ խոշոր հաջողությունների է հասել նաև մեր ռեսպուբլիկան։ Ռեսպուբլիկայում գյուղատնտեսական աշխատանքների մոտ 90 տոկոսը մեքենայացված է։ Կոլտնտեսություններում և սովխոզներում մեծ չափերով բարձրացել է բերքատվությունը և անասունների մթերատվությունը։

✪ Այժմ Հայաստանի կոլտնտեսային դաշտերում աշխատում են 5649 տրակտոր (15 ձիու ուժի հաշվով), 909 կոմբայն և մեծ քանակությամբ կալսիչներ, խոտհնձիչներ, սիլոսային կոմբայններ և գյուղատընտեսական շատ ուրիշ մեքենաներ։

✪ Հինգերորդ հնգամյակում բամբակի համա-

խառն թերքը ավելացավ 47 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 50 տոկոսով, ծխախոտինը՝ 78 տոկոսով, խաղողինը՝ 29 տոկոսով։

✪ Անասունների գլխաքանակն ավելացել է 21 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 36 տոկոսով, ոչխարներինը՝ 47 տոկոսով։

✪ 1940 թվականի համեմատությամբ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում դրամական եկամուտները ավելացավ 3 անգամ, անբաժանելի ֆոնդերը 4 անգամ, իսկ արտադրության հիմնական միջոցները՝ 3,8 անգամ։ 1940 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների դրամական եկամուտը կազմում էր 224 միլիոն 861 հազար ռուբլի, իսկ 1956 թվականին այն հասավ 747 միլիոն 776 հազար ռուբլու։

✪ 1940 թվականին կոլտնտեսություններում անբաժանելի ֆոնդերը եղել են 269 միլիոն 776 հազար ռուբլի, իսկ 1956 թվականին 1 միլիարդ 140 միլիոն 732 հազար ռուբլի։

✪ Մեծ չափերով ավելացել է անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Այս տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, կոլտնտեսություններում կաթի արտադրությունն ավելացել է 15 տոկոսով, մսինը՝ 15,1 տոկոսով։ Անցյալ տարի կոլտնտեսություններում ստացվեց 110 հազար տոննա կաթ, իսկ այս տարվա 9 ամիսների ընթացքում՝ 113 հազար տոննա կաթ։

---



# ԱՄՐԱՊՆԴՎՈՒՄ Է ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՐԿՐՆԵՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

Վ. ՄԻՇԿՈՎ

ՍՍՌՄ-ի և մյուս սոցիալիստական երկրների փոխհարաբերությունները, այդ թվում նաև տնտեսական հարաբերությունները կառուցված են պրոլետարական ինտերնացիոնալիզմի, եղբայրական բարեկամության, սերտ համագործակցության ու փոխօգնության կայուն հիմքի վրա։

Սոցիալիզմի երկրների տնտեսական փոխհարաբերություններում առանձնապես կարևոր տեղ է գրավում արտաքին առևտուրը, որի օգնությամբ իրագործվում է աշխատանքի նոր, սոցիալիստական միջազգային բաժանումը իրավահավասար, բարեկամական երկրների միջև։ Նրա հիմքում ընկած է փոխադարձ օգնությունը։

ՍՍՌՄ-ի առևտուրը սոցիալիզմի մյուս եր-

կըրների հետ սիստեմատիկորեն աճում է։ Նախնական տվյալներով, Սովետական Միության ապրանքաշրջանառությունը մյուս սոցիալիստական երկրների հետ 1957 թվականին աճել է, 1950 թվականի համեմատությամբ, 2,2 անգամ։

Սովետական Միության և ժողովրդա-դեմոկրատական պետությունների միջև կնքվող առևտրական համաձայնագրերի առևտրական ցուցակներն է մտցվում ապրանքների մի լայն շրջանակ, որոնց գնման և մատակարարման մեջ նրանք փոխադարձաբար շահագրգռված են։

Որպես օրինակ կարելի է բերել Սովետա-Չեխոսլովակյան Համաձայնագիրը 1957 թվականին փոխադարձաբար մատակարարվող ապրանքների մասին։ Այդ համաձայնագրին համապատասխան Սովետական Միությունը Չեխոսլովակիային մատակարարում է հացահատիկ, երկաթաքար, գունավոր մետաղներ, չուգուն, երկաթի համաձուլվածքներ, նավթ և նավթամթերքներ, բամբակ, բուրդ, սղոցանյութեր, հանքային պարարտանյութեր, գյուղատնտեսական մեքենաներ, տրակտորներ, թեթև ավտոմոբիլներ, ժողովրդական տնտեսության զանա-



զան բնագավառների համար սարքավորումներ և շատ այլ ապրանքներ։

Չեխոսլովակիան այդ ապրանքների փոխարեն ՍՍՌՄ-ին մատակարարելու է նավեր, էլեկտրաքարշեր, ջերմաքարշեր, դիզելային էլեկտրակայաններ, մետաղահատ դազգահներ, գլանվածքային և դարբնոցամամլակային սարքավորումներ, մի շարք գյուղատնտեսական ապրանքներ, թեթև արդյունաբերության իրեր և այլն։

Եղբայրական սերտ համագործակցության վկայություն են նաև Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների միջև կնքված առևտրական համաձայնագրերը։

Հայտնի է, որ Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկան չունի բավարար քանակով արդյունաբերական հումք։ 1957 թըվականի փոխադարձ մատակարարումների մասին արձանագրության համաձայն Սովետական Միությունը զգալիորեն բավարարում է հունգարական արդյունաբերության կարիքները երկաթաքարի, չուգունի, բամբակի, նավթի, կապարի, նիկելի, շինափայտի և մյուս ապրանքների հարցում։

Սոցիալիստական երկրների միջև տնտեսական համագործակցությունը և, առաջին հերթին, արտաքին առևտուրը է՛լ ավելի

զարգացած կարճժամկետ առևտրական համաձայնագրերից երկարժամկետին անցնելու կապակցությամբ։ Այդպիսի համաձայնագրերը դարձան սոցիալիստական երկրների հեռանկարային ժողովրդատնտեսական պլանների փոխադարձ համաձայնեցման ձևերից մեկը։

Երկարժամկետ համաձայնագրերի շնորհիվ յուրաքանչյուր երկիր կարող է իր ջանքերը կենտրոնացնել արտադրության այն տեսակների զարգացման վրա, որոնց համար իր մոտ կան առավել նպաստավոր պայմաններ, թողարկել այնպիսի արտադրանք, որն անհրաժեշտ է ինչպես իր ներքին պահանջները բավարարելու համար, այնպես էլ մյուս սոցիալիստական պետությունների կարիքների համար։

Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների պարտիական-կառավարական դելեգացիաների բանակցությունների ժամանակ անհրաժեշտություն համարվեց նոր, երկարժամկետ համաձայնագրերի կնքումը, որոնք կայուն հեռանկար են ստեղծում սոցիալիստական երկրների ժողովրդական տնտեսության պլանային զարգացման համար։

Այս թվականի ապրիլին ՍՍՌՄ-ի և



Հարավսլավիայի միջև նույնպես կնքվեց երկարժամկետ համաձայնագիր, որը ապրանքների փոխադարձ մատակարարում է նախատեսնում 1958—1960 թվականների ընթացքում։ Սովետական Միությունը Հարավսլավիային կմատակարարի ցորեն, բամբակ, կոքսացվող ածուխ, նավթ, մարգանեցի հանքաքար, մեքենաներ և սարքավորումներ, և կստանա գունավոր մետաղներ, քիմիական, գյուղատնտեսական և մի քանի այլ սպառողական ապրանքներ։ Այս համաձայնագրի կնքումով նոր հեռանկարներ են բացվում սովետա-հարավսլավական տնտեսական հարաբերությունների հետագա ընդլայնման համար։

Սեպտեմբեր ամսին Բեռլինում Սովետական Միության և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի միջև համաձայնագիր ստորագրվեց 1958—1960 թվականներին ապրանքների փոխադարձ մատակարարումների մասին։ Այդ համաձայնագրով նախատեսնվում է, որ այդ երկրների միջև նշված ժամանակամիջոցում ապրանքաշրջանառությունը կկազմի ժամանակակից համաշխարհային գներով 20 միլիարդ ռուբլի։

Սոցիալիզմի երկրների տնտեսական հարաբերություններում կարևոր դեր է խաղում

փոխադարձ վարկավորումը։ Այդ վարկերը շահագործման կամ տնտեսական էքսպանսիայի նպատակներ չեն հետապնդում, ինչպես այդ լինում է կապիտալիստական երկրների ֆինանսական փոխհարաբերությունների մեջ, այլ իրենցից ներկայացնում են սոցիալիզմի կառուցման ուղին դուրս եկած երկրների փոխօգնության ձևերից մեկը։

Սոցիալիստական երկրները առավելագույն չափով օգտագործելով սեփական ռեսուրսներն ու կուտակումները, միմյանցից, և առաջին հերթին Սովետական Միությունից, տնտեսական օգնություն են ստանում վարկերի և փոխառությունների ձևով։

Սովետական Միությունը, օրինակ, միայն վերջին 10 տարիների ընթացքում Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկային տրամադրել է ավելի քան 900 միլիոն ռուբլու երկարժամկետ վարկեր և անհատույց կերպով նրան հանձնել 100 միլիոն ռուբլու արժողությամբ սովետական ունեցվածք։

Սովետական երկարժամկետ փոխառությունների օգնությամբ Բուլղարիայում, Հունգարիայում, Ալբանիայում և մյուս սոցիալիստական երկրներում կառուցվել են բազմաթիվ նոր ձեռնարկություններ, որոնք հագեցված են նորագույն տեխնիկայով, իսկ



շատ հին ձեռնարկություններ վերակառուցման են ենթարկվել։

Սովետական Միությունը մյուս սոցիալիստական երկրներին վարկ և փոխառություն է տրամադրում, որոնք շատ շահավետ են իրենց մարման պայմաններով, ժամկետներով և տոկոսների չափերով։ Սովետական վարկերը մարվում են ոչ թե ոսկով կամ արտասահմանյան վալյուտայով, այլ սոցիալիստական երկրների արտաքին առևտրական շրջանառության համար սովորական ապրանքներով։ Սովետական Միությանը մատակարարվող այդ ապրանքների գները որոշվում են առևտրական համաձայնագրերի համապատասխան։

Սոցիալիստական երկրների միջև եղբայրական համագործակցության ձևերից մեկը նրանց փոխադարձ գիտատեխնիկական օգնությունն է: Սովետական Միությունը և մյուս սոցիալիստական պետությունները մշտական, անընդհատ աճող ծավալով գիտատեխնիկական նվաճումների և առաջավոր արտադրական փորձի փոխանակություն են կատարում միմյանց հետ։ Այս բոլորը իրագործվում է անհատույց, որը անկրկնելի դեպք է միջպետական հարաբերությունների պատմության մեջ։ Սոցիալիստական պետու-

թյունները միմյանց մեծ աջակցություն են ցույց տալիս նաև գիտական ու տեխնիկական կադրերի պատրաստման գործում։

1957 թվականին սոցիալիստական պետությունների գիտատեխնիկական համագործակցությունը իր հետագա զարգացումը ստացավ։ Վերջերս Մոսկվայում իր աշխատանքներն ավարտեց գիտատեխնիկական համագործակցության գծով Սովետա-Բուլղարական հանձնաժողովի իններորդ սեսիան։ Սեսիայում ընդունված որոշումների համաձայն սովետական կազմակերպությունները բուլղարական կազմակերպություններին պետք է հանձնեն քարշային ենթակայանների շինարարության նախագծային տեխնիկական փաստաթղթերը, զանազան էլեկտրասարքավորումների գործնական գծագրերը, նավերի կառուցման տեխնոլոգիական փաստաթղթերը, մսի կոմբինատների համար սարքավորումների պատրաստման գծագրերը, ինչպես նաև այլ փաստաթղթեր և ինֆորմացիոն-տեղեկանքային տեխնիկական նյութեր։

Սովետական մասնագետները Բուլղարիա են մեկնելու գյուղատնտեսական մեքենաշինության, նավերի կառուցման և երկաթուղիների էլեկտրիֆիկացիայի բնագավառում տեխնիկական օգնություն ցույց տալու հա-



մար։ ՍՍՌՄ-ի ձեռնարկություններում բուլղարական մասնագետներին ծանոթացնում են հիդրոտուրբինների ու հիդրոգեներատորների պատրաստմանը, գյուղատնտեսական մեքենաների արտադրության կազմակերպման և տեխնոլոգիայի հետ և այլն։

Իրենց հերթին բուլղարական կազմակերպությունները սովետական համապատասխան կազմակերպություններին կհանձնեն ծխախոտի արդյունաբերության համար մեքենաների մի քանի տեսակների տեխնիկական փաստաթղթեր, պահածոների պատրաստման տեխնոլոգիական փաստաթղթեր, գյուղատնտեսական կուլտուրաների սերմերի նմուշներ, ինչպես նաև իրենց ձեռնարկություններում սովետական մասնագետներին կծանոթացնեն սննդի արտադրանքի արտադրության և պահպանման բնագավառում եղած նվաճումների հետ։

Խաղաղության և ժողովուրդների միջև համագործակցության ընդլայնման գործում մեծ ավանդ է մյուս սոցիալիստական պետություններին Սովետական Միության ցուցաբերած գիտատեխնիկական և արտադրական օգնությունը միջուկային ֆիզիկայի բնագավառում ուսումնասիրությունների և խաղաղ նպատակներով ատոմային էներգիան

օգտագործելու համար գիտաէքսպերիմենտալ բազաներ ստեղծելու գործում։

Վերջերս կայացավ առաջին ատոմային ռեակտորի թողարկումը Չեխոսլովակիայում, որը կառուցվեց սովետական մասնագետների օգնությամբ և հագեցված է սովետական սարքավորումներով։ Արդյունավետ է անցնում սոցիալիստական երկրների գիտնականների համատեղ աշխատանքը միջուկային հետազոտությունների Միացյալ ինստիտուտում։

Դժվար է գերագնահատել Տնտեսական փոխօգնության խորհրդի գործունեության նշանակությունը սոցիալիզմի երկրների տնտեսական հարաբերությունների զարգացման և ամրապնդման համար։

ՍՍՌՄ-ի փոխհարաբերությունները մյուս սոցիալիստական պետությունների հետ հիմնված է ՍՍՌՄ կառավարության 1956 թվականի հոկտեմբերի 30-ի դեկլարացիայի վրա։

Սոցիալիստական երկրների ամրապնդվող համագործակցությունը, որը հիմնված է պրոլետարական ինտերնացիոնալիզմի, իրավահավասարության, անկախության և եղբայրական փոխադարձ օգնության սկզբունքների վրա, սոցիալիզմի և խաղաղության ուղիով նրանց հաջող զարգացման հուսալի երաշխիքն է։

---

# ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

ԿՈՆՖԵԴԵՐԱՑԻԱ.— Լատինական բառ է, որը նշանակում է միություն, դաշինք։ Դա կարող է լինել որևէ հասարակական կազմակերպությունների միություն։ Հայտնի է, օրինակ, Աշխատանքի ընդհանուր կոնֆեդերացիան Ֆրանսիայում, որը միավորում է ֆրանսիական բոլոր արհմիութենական ինքնուրույն կազմակերպությունները մեկ ընդհանուր միության մեջ։ Լինում է նաև պետությունների կոնֆեդերացիա, որը կազմվում է որևէ որոշակի նպատակով։ Պետական կոնֆեդերացիայի մեջ մտած երկրները պահպանում են իրենց պետական սուվերենությունը (ինքնուրույնությունը), նրանք միավորվում են միայն մեկ կամ մի քանի ընդհանուր օրգաններով։ Պետական կոնֆեդերացիայում չկա ընդհանուր միութենական բարձրագույն օրենսդրական իշխանություն, որը տարածվեր նրա մեջ միավորված բոլոր պետությունների վրա։ Նա չունի ինքնուրույն իշխանություն (սուվերենություն), չունի իշխանության օրգաններ, չունի հարկային սիստեմ։ Նա չունի նաև ընդհանուր միութենական քաղաքացիություն։ Նրա ֆինանսական միջոցները գոյանում են նրան մասնակից պետությունների վճարումներից։

Կոնֆեդերացիան իր խնդիրները, որի համար նա

ստեղծվել է, իրականացնում է հատուկ մշտական օրգանների (սեյմ, կոնգրես կամ որևէ ուրիշ անունով ստեղծված օրգան) միջոցով, որոնք ստեղծվում են նրա մեջ մտած պետությունների ներկայացուցիչներից։ Կոնֆեդերացիան կարող է ունենալ նաև հատուկ օրգաններ ռազմական, արտաքին, ֆինանսական և այլ հարցերի գծով։

Կոնֆեդերացիայի օրգանները կարող են բանակցություններ վարել միայն այդ միության մեջ մտած պետությունների կառավարությունների հետ։ Նրանք կոնֆեդերացիայի անդամ պետությունների քաղաքացիների նկատմամբ ուղղակի իշխանություն գործադրել չեն կարող, քանի որ կոնֆեդերացիայում ընդհանուր քաղաքացիություն գոյություն չունի։

Ֆեդերացիայի համեմատությամբ, կոնֆեդերացիայի մեջ մտած պետությունների տնտեսական, քաղաքական, կուլտուրական և այլ կապերը թույլ են։ Պատմության մեջ հայտնի կոնֆեդերացիաներից են Շվեյցարական միությունը (1291—1798 թ. թ. և 1815—1848 թ. թ.), Գերմանական միությունը (1815—1866 թ .թ.), ԱՄՆ (1776—1787 թ. թ.) և այլն։

Վերջերս Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան առաջարկեց Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկային ստեղծելու Գերմանական կոնֆեդերացիա, որի միջոցով աստիճանաբար նախապատրաստել Գերմանիայի վերամիավորումը։ Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկան, չճանաչելով ընդհանրապես ԳԴՌ-ի



կառավարությանը, ինչպես միշտ մերժել է նաև նրա այս առաջարկությունը։ ԳՖՌ-ն ձգտում է պարզապես մեխանիկորեն Արևելյան Գերմանիան միացնել Արևմտյան Գերմանիայի հետ ադենաուերյան ռեժիմի ներքո։

ԿՈՆՅՈՒՆԿՏՈՒՐԱ.— Ֆրանսիական բառ է, որ նշանակում է միացնել, կցել։ Կոնյունկտուրա բառը օգտագործելիս հասկանում ենք տվյալ ժամանակաշրջանում ստեղծված հանգամանքների, դեպքերի ամբողջությունը, իրերի վիճակը, իրադրությունը։ Օրինակի համար ասում ենք՝ քաղաքական կոնյունկտուրան այժմ նըպաստավոր է...։ Կամ ասում ենք կապիտալիստական տնտեսության կոնյունկտուրան (վիճակը) խախուտ է և այլն։

ԱՍԱՄԲԼԵԱ.— Ֆրանսիական բառ է, որ նշանակում է ժողով, ներկայացուցչություն։ Հայտնի է, օրինակ, որ ռուսական ցար Պետրոս Առաջինի ժամանակ հրավիրվում էին վերնախավերի ներկայացուցիչների պարահանդեսներ, որոնց ժամանակ տեղի էր ունենում նաև բանակցություններ, քննարկումներ անհրաժեշտ հարցերի շուրջը։ Այդպիսի հավաքները կոչվում էին Ասամբլեա։

Հայտնի է նաև Գլխավոր Ասամբլեան, որը Միավորված Ազգերի Կազմակերպության (ՄԱԿ-ի) հիմնական օրգաններից մեկն է և կազմված է այդ կազմակերպության մեջ մտած բոլոր պետությունների ներկայացուցիչներից։ Այն հիմնադրվել է 1945 թվակա-

նին։ ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի հերթական նիստերը գումարվում են տարեկան մեկ անգամ (սեպտեմբերին)։ 1957 թ. սեպտեմբերին սկսվեց նրա 12-րդ սեսիան, որը դեռ շարունակվում է։ Նա ունենում է նաև հատուկ սեսիաներ, որոնք հրավիրվում են արտակարգ հարցերի կապակցությամբ՝ Անվտանգության Խորհրդի կամ ՄԱԿ-ի անդամների մեծամասնության պահանջով։ Գլխավոր Ասամբլեան քննարկում է ՄԱԿ-ի և նրա օրգանների իրավասության մեջ մտնող ամեն մի հարց, բացի այն հարցերից, որոնք գտնվում են Անվտանգության Խորհրդի տնօրինության տակ։ Գլխավոր Ասամբլեան քննարկում է միջազգային խաղաղության և անվտանգության պահպանման գործում համագործակցության ընդհանուր սկզբունքները, այդ թվում զինաթափման և սպառազինությունների կարգավորման սկզբունքները։ Այդ սկզբունքների կապակցությամբ նա իրավունք ունի ՄԱԿ-ի անդամ պետություններին, Անվտանգության Խորհրդին հանձնարարականներ տալ։

Չնայած իր այս վեհ կոչմանը, Գլխավոր Ասամբլեան առայժմ հիմնականում օգտագործվում է Ամերիկյան իմպերիալիստների և նրանց համախոհների կողմից խափանելու ՍՍՌՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների, խաղաղասեր պետությունների ջանքերը, որոնք ուղղված են խաղաղության և անվտանգության ամրապնդման գործին։

ԱՆՍԱՄԲԼ.— Ֆրանսիական բառ է, որ նշանակում է



միասին, միասնություն, համաձայնություն, կուռ ամբողջություն։ Օրինակ, ասում ենք Երևանի Լենինի անվան հրապարակը և նրա շուրջը բարձրացրած հոյակապ շենքերը գեղեցիկ ճարտարապետական անսամբլ են (միասնություն, կուռ ամբողջություն, համաձայնություն) կազմում։ Անսամբլ են կոչվում նաև երգի, պարի, երաժիշտների խմբերը։ Ասում ենք ժողովրդական երգի և պարի անսամբլ (խումբ), ժողովրդական գործիքների անսամբլ և այլն։

---

## СОДЕРЖАНИЕ



---

**Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ**

**ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է**

**„ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի**

**1958 ԹՎԱԿԱՆԻ**

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ**

*Լույս է տեսնում ամսական 2 անգամ։*

*1— ամիսը — 1 ռ.*

*6— ամիսը — 6 ռ.*

*12— ամիսը — 12 ռ.*

*Մեկ համարը — — 50 կոպ.*

*«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»*

**Отдел пропаганды и агитации**

**ЦК КП Армении**

**БЛОКНОТ АГИТАТОРА**

**№ 23 1957 г.**

ՎՖ 11150 Պատվեր 855 Տիրաժ 8500

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.։